## ՀԱՇԻՒ

—o—

Աշխարհի վրայ չը կայ ո՛եւէ գործ որ չը պահանջէ հաշիւ։

Վաճառականը պէտք է հաշուի առնէ իր գործառնութիւնները։

Տանուտէրը պէտք է հաշուէ իր եկամուտքը։

Իսկ բանաստեղծը՝..... պէտք է հաշուէ իր տանաւորներուն ոտքերը։

Կան կարգ մը մարդիկներ, որոնք կարծես պժգանք կ'զգան հաշիւէն, կը փախչին հաշիւին անունը իսկ տալ, կարծես կ'այրի իրենց լեզուն այս բառը արտասանած պահերնուն եւ ասոնք են ընդհանրապէս իրենք զիրենք գեղարուեստի մարդ դաւանողները։ Ասոնք այն համոզումը ունին թէ՝ գեղարուեստը երբէք չը կրնար հաշտուիլ հաշիւի հետ, թէ՝ գեղարուեստի մարդը չը կրնար ըմբռնել հաշիւը։ Սո՛ւտ, կեղծիք բոլորն ալ, ե՛ւ գեղարուեստը ե՛ւ արուեստը բոլորն ալ պէտք ունին հաշիւի եւ առանց հաշիւի չեն կրնար ըլլալ կատարեալ։

Կ'ընդունիմ որ երբեմն հանճարը, առանց հաշիւի ալ կրնայ արտադրել սքանչելի արդիւնք, բայց երբ այդ հանճարին միանայ հաշիւը, այն ատեն է որ յառաջ կուգայ սքանչելի քա՛ն սքանչելին։

Վիքթօ-Հիւկօն իրաւամբ, երբ Թշուառներուն մէջ կը նկարագրէ Վաթերլօն կ'ըսէ Բայց այս անգամ հանճարը յաղթուեցաւ հաշիւէն։

Թէ ի՞նչ է պատճառը որ շատերը կը սոսկան հաշիւէն, պատճառը նախապաշարումն է միայն, երբ մարդ մէկ անգամ ինքնավստահութիւնը կը գայթցնէ իր մէջ թէ պիտի կարենայ ընտելանալ հաշիւին, այն ատեն չը կայ ո՛եւէ ուսում, չը կայ ո՛եւէ բան աւելի հեշտ՝ քան հաշիւը։

Ընդհանրապէս ես չեմ կրնար ըմբռնել ձիրքը, իսկ հաշիւի մէջ երբէք։ Մարդ երբ ունի քիչ մը բանականութիւն, անպայման կարող է ընտելանալ հաշիւին, բաւական է որ նախապաշարուած չ'ըլլայ։

Հանդիպած եմ մարդոց, որոնք իրենք զիրենք բոլորովին անընդունակ նկատած են հաշիւի, բայց երբ կըրցած եմ արմատախիլ ընել անոնց մտքէն այդ համոզքը, շատ հեշտ եկած է իրենց հաշիւի ուսումը։

Ու երբ ի նկատի ունենանք թէ՝ հաշի՞ւը թէ՛ անհրաժեշտ տարրն մէկն է ամէն գործի եւ թէ՛ միւս կողմէ անպայման կը զօրացնէ տրամաբանութիւնը ու դատողութիւնը, կըրնանք հանիլ սա եզրակացութեան, որ, պէտք է ամէն մարդ առհասարակ սորվի հաշիւը, ու ընտելանայ անոր կարեւոր եղածին չափ չափ։

Ես կը յանձնարարեմ մանաւանդ հաշիւին իբր ամենադիւրին ուսման մը եւ իբրեւ այդ ատեն պիտի տեսնուի թէ՝ իրականին մէջ ամենադիւրինը եւ ամենապարզն է այն բոլոր ուսումներուն մէջ։

Ս. Բ.



## ՄԵՐ ՏԿԱՐ ԿՈՂՄԵՐԸ

### ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԻՒՆ

Հայու մը պէս սխալ ու Անգլիացիի մը պէս շտկուելով խօսքը՝ գրեթէ առած կարգ անցած է։ Երբ գործի մը կ'սկսինք, ամէն ջանք, ամէն խանդավառութիւն գերազանց սահմանի մէջ կ'ըլլան անհնարին կիրարկել գործին ո՛րիշը կը գրուի ու մարդ կը տարուի խորհիլ թէ՝ այս գործը յաջողութեան ամէն երաշխիք ունի, բայց կանցնին քանի մը ամիսներ, կ'անցնի տարի մը, ու ա՜հա ամէն մարդ պաղած է գործէն, վարչութիւնը կազմալուծուած է եւ գործը մնացած է երեսի վրայ։

Ճիշդ այսպէս էր որ կազմուեցաւ քաղաքիս մէջ գործակցական ընկերութիւնը. անդամները շատ եռանդով խանդավառուած էին, վարչութիւնը ոգի ի բաշն կ'աշխատէր. առաջին 4-5 ամիս հազիւ դրամագլուխ կար մէջ տեղ եւ արդէն ընկերութեան ընկերութեան բացած հացի փուռը կը մրցէր միւս բոլոր հացագործներուն հետ. քաղաքին մէջ գտնուող աւելի քան 60 հացագործները կը կազմէին ու ամէն կերպով կ'աշխատէին գործը փճացնել, նոյնիսկ որոշ ... ալ իրենց կողմէ գանձուեցան, բայց զարմանալ չը կրնան իրենց նոր ... հանի։ Բոլոր հացագործներն ալ գրեթէ այդ շրջանին միացեր էին, իսկ Գործակցականը կրցաւ կարճ ժամանակի մը մէջ աւելի քան 30 ոսկի շահիլ, բաժնետէրներուն չը բաւականանալով մէկ փուռով ու բացուեցաւ երկրորդ մըն ալ։

Բայց խանդավառութիւնը արդէն սկսած էր անցնիլ, ու կը յաջորդէր կամաց կամաց անտարբերութիւնն անոր։

Տարին կը լրանայ, հաշիւները կը հանուին, ու ընկերութեան շահը կ'ըլլայ 700 800 դրշ. մի յն. Այս հետեւանքն էր գործերու նուազելուն պատճառ գոյին երկու փուռեր բացուելուն եւ առաւ կ'որոշուի։

Կ'ընտրուի նոր վարչութիւն մը, գործելու քիչ մը խանդավառութիւն բայց յետագային անտարբերութիւն։

Կ'անցնին ամիսներ, ու ահա շշուկներ կ'սկսին թէ ընկերութիւնը ահագին վնաս ունի, չը կրնար վճարել իր պարտքերը։

Կը յաջորդէ տար. ընդհ. ժողով մը վարչութիւնը կազմալուծուած է, ո՛չ ոք կուզէ պատասխանատուութիւն ըստանձնել, ի վ գործավարը առանց կարմրելու կը յայտարարէ թէ, 4-5 ամսուան ընթացքին 80 ոսկիի չափ վնասած է գործը, մինչ միւս հացագործները շահած են։

Վարչութեան Ատենապետը փուռերուն գոցուիլը կը յայտարարէ, մինչ քանի մ'օր վերջ գործավարը կը շարունակէ գործը առանց վարչութեան անդամներէն ոչ ոքին գիտութեան։

Ու երեւակայել թէ՝ 4-5 ամսուան մէջ 80 ոսկի վնասող գործ մը, գործավարը յանձն կառնէ շարունակել իր հաշւոյն։

Յայտնի կ'երեւայ որ այս գործի մէջ կայ մեծ զեղծում մը։

Վարչութիւնը պատասխանատու է այնչափ որչափ որ պատասխանատու է գործավարը։

Իսկ անդամնե՞րը։ Անդամներ կը գանգատին, կը տրտնջան, բայց ցարդ չը միացան, չ'եկան մէկզմէկու քով ու չը խորհեցան այս անել կացութեան դարման։

Ամենայուսալի գործ մը, կը վայելէ՞ միթէ այս աստիճան խայտառակ վիճակի հասցնել։

Մե՛նք կը թելադրենք գործակցական ընկերութեան անդամներուն, որպէսզի միանան, խորհին կացութեան վրայ, մէջտեղ հանեն զեղծարարները ու ապա նոր խանդով սկըսին գործի։ Եթէ հացագործութիւնն ալ համագործակցութեամբ չը յաջողի, ապա ուրեմն եւ ո՛չ մէկ ուրիշ գործի համագործակցութեամբ յաջողելու յոյս չը կայ։

Ա. Գ. Ը.



## ԳԱՒԱՌԻՆ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Ն. ԽՄԲ.- Այս խորագրին տակ պիտի տըրւին վիճակագրական ամփոփ ու նշանաւոր ծանօթութիւններ մեր գաւառի տնտեսական, կրթական եւ այլ կեանքի մասին։ Կը յուսանք ներգործել աւելի լայն բանի մը յառաջացման այս նիւթին։

### 1. ԱՏԱ-ԲԱԶԱՐ

Իզմիթի սանճագին ամենէն շքեղ կարեւոր գաւառն է Ատա-Բազար, որ ընդարձակ դաշտի մը վրայ տարածուած վաճառաշահ քաղաք մըն է։ Ունի 30,000 բնակիչ, որուն 13,000-ը հայ